Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար



Առաջավորների փորձից



Օգտագործիր զրույցի ժամանակ



Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս 2—52—78։





# ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏՎԻՆ ԾԱՎԱԼՎԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջանք չեն խնայում ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները անշեղորեն կենսագործելու համար։ Այդ պատմական որոշումները քաղաքական և աշխատանքային բուռն վերելք են առաջ բերել կոլտնտեսություններում և ձեռնարկություններում։ Արդյունաբերության և գյուղատնտեսության հազարավոր աշխատողներ արտադրական նոր նվաճումներով են դիմավորում պարտիայի 20-րդ համագումարը։

Այժմ ռեսպուբլիկայի գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում ու մեքենա-տրակտորային կայաններում ի պատիվ պարտիայի 20-րդ

համագումարի ծավալվում է սոցիալիստական մրցություն։ Արտադրական ձեռնարկությունների ամբողջ կոլեկտիվներ պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մրցում են միմյանց հետ արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները պատվով կատարելու համար։

Ծավալված այդ սոցիալիստական մրցությունն արդեն տալիս է իր փայլուն արդյունքները։ Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանի կոլեկտիվը կատարելով ստանձնած պարտավորությունը, պլանից դուրս երկրին տվել է 14 միլիոն ռուբլու արտադրանք։ Գործարանը հասել է տեխնիկական բարձր զարգացման։ 1951 թվականի համեմատությամբ գործարանի կարողությունն ավելացել է 6 անգամ, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 78 տոկոսով։ Երևանի պահածոների գործարանի կոլեկտիվը մտնելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, խոստացել էր լրացուցիչ կերպով երկրին տալ մեկ միլիոն տուփ պահածո։ Մրցության



մեջ մտնելուց հետո գործարանի կոլեկտիվը պատվով է կատարում իր ստանձնած պարտավորությունը, յուրաքանչյուր օր գերակատարելով պահածոների թողարկման պլանը։ Օրստօրե ավելի ուժեղ թափով է ծավալվում պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը Լենինականի ձեռնարկություններում։ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի ֆաբրիկաների կոլեկտիվները պարտավորություն են ստանձնել մինչև տարվա վերջը պլանից ավելի տալ 120 տոննա մանվածք, 750 հազար մետր գործվածք։ Կոմբինատում ծավալված մրցության հուլիս ամսվա արդյունքները ցույց են տալիս, որ ֆաբրիկաների կոլեկտիվները հաջողությամբ են կատարում ստանձնած պարտավորությունները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը բուռն թափով ծավալվում է նաև ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում։ Ի պատիվ պարտիայի 20-րդ համագումարի, ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ բարձր ցուցանիշներով են

կատարում սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները։ Մինչև օգոստոսի 10-ը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի պլանը կատարվել է 46,3 տոկոսով։ Անցյալ տարի այդ նույն ժամանակաշրջանում հավաքվել էր հացահատիկի բերքի 25,5 տոկոսը։ Մեքենա-տրակտորային կայանների կոմբայնները, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, այս տարի կրկնակի չափով հունձ են կատարել։ Մտնելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցության մեջ, շատ կոլտնտեսություններ ժամկետից շուտ կատարեցին պետությանը հացահատիկ հանձնելու պարտավորությունները։ Իջևանի շրջանի Թալա, Ենոքավան, Ներքին Աղդան, Լուսաձոր, Խաշթառակ, Ուզունթալա, Գետաշեն և ուրիշ գյուղերի կոլտնտեսությունները դեռ օգոստոսի առաջին տասնօրյակում կատարեցին հացահատիկի հանձնման տարեկան պլանը։ Այդ նույն ժամանակաշրջանում նշված կոլտնտեսությունները կատարեցին նաև մեքենա-տրակտորային կայանի աշխատանքի դիմաց բնավարձի վճարման պլանը։ Հացահատիկի պետական պարտավորությունները ժամկետից շուտ կա-



տարել են նաև Գորիսի, Ալավերդու, Ազիզբեկովի և մի շարք այլ շրջանների տասնյակ կոլտնտեսություններ։

Ռեսպուբլիկայում սկսվել է հացահատիկի, բանջարաբոստանային կուլտուրաների, իսկ այնուհետև կսկսվի խաղողի և տեխնիկական կուլտուրաների բերքահավաքի եռուն շրջանը։ Խնդիրն այն է, որ կոլտնտեսային դաշտերում աճեցված առատ բերքը ժամանակին, առանց կորստի հավաքվի և տեղափոխվի շտեմարաններն ու մթերակայանները։

Այդ գործում խոշոր անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Հարկավոր է ունկնդիրների ուշադրությունը բևեռել այն բանի վրա, թե ինչպես և ինչ միջոցներով անթերի կատարել ստանձնած պարտավորությունները, գործնականում կոնկրետ օգնություն ցույց տալ ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։ Օրինակ, աշխատանքի նման դրական փորձ ունի Բասարգեչարի մեքենա-տրակտորային կայանի պարտկազմակերպությունը։ Այստեղ ագիտատորները, որոնք մեծ մասամբ աշխատանքի առաջավորներ են, իրենց լավ աշխատանքով օրինակ են ցույց տալիս մյուս մեխանիզատորներին։ Կոմբայնավարներ Հ. Եղիազարյանը

և Ս. Սիմոնյանը, որոնք աշխատում են Ջողի կոլտնտեսությունում, ամեն օր հնձի պլանը կրկնակի չափով են կատարում։ Օրերս նրանք հարևան կոլտնտեսությունում աշխատող կոմբայնավարներին մանրամասնորեն պարզաբանեցին իրենց աշխատանքի փորձը՝ բերքը դաշտից արագ և անկորուստ հավաքելու գործում։ Մեքենա-տրակտորային կայանի ագիտկոլեկտիվը պարտկազմակերպության պահանջով հանձնարարություն է տվել ագիտատորներին՝ լայնորեն մասսայականացնել անվանի կոմբայնավարներ Ա. Գասպարյանի և Հ. Սիմոնյանի աշխատանքի փորձը, որոնք օրական հավաքում են ոչ պակաս, քան 25 հեկտարի բերք։ Մեքենա-տրակտորային կայանի ագիտատորները ամեն օր տեղյակ լինելով մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին, գիտեն, թե ով ինչպես է կատարում պարտիայի 20-րդ համագումարը աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու վերաբերյալ իր խոստումը։ Աշխատանքի նման օրինակներ ռեսպուբլիկայում շատ կան։

Կոլտնտեսային ագիտատորների առաջնահերթ խնդիրներից մեկն էլ այն է, որ նրանք պարտիայի 20-րդ համագումարի պատվին



ծավալված սոցմրցության ընթացքում հատուկ ուշադրություն դարձնեն բերքի կորուստների դեմ մշտական պայքար կազմակերպելու վրա։ Խմբակային և անհատական զրույցների, պատի թերթի և դաշտային իլյիչովկաների, մանավանդ ցուցադրական ագիտացիայի միջոցով կոլտնտեսականներին ու մեխանիզատորներին պարզաբանել, թե ինչպես կանխել բերքի կորուստը, ժամանակին տեղափոխել և խնամքով պահպանել այն։

Մեր արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և մեքենա-տրակտորային կայանների պարտիական կազմակերպությունների, ագիտկոլեկտիվների և բոլոր ագիտատորների խնդիրն է՝ էլ ավելի լայնորեն ծավալել պարտիայի 20-րդ համագումարի պատվին կազմակերպված համաժողովրդական սոցիալիստական մրցությունը և նոր ու խոշոր հաջողությունների հասնել արդյունաբերության, գյուղատնտեսության հետագա զարգացման գործում, մեր սոցիալիստական Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման գործում։

---

# ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Փոխգնդապետ, տնտեսական գիտություն-
ների թեկնածու

*Սեպտեմբերի 11-ին սովետական ժողովուրդը տոնելու է տանկիստների օրը։ Այդ տոնը մեր երկրում նշվում է սկսած 1946 թվականից։*

*Տոնելով տանկիստների օրը, դրանով սովետական մարդիկ մեծարում են պանծալի տանկիստների և տանկաշինարարների մատուցած աչքի ընկնող ծառայությունները Հայրենական Մեծ պատերազմում։*

*Տանկիստների օրը այս տարի սովետական ժողովուրդը նշում է կոմունիստական շինարարության բոլոր ֆրոնտներում ձեռք բերած մեծագույն հաղթանակների պայմաններում։ Առանձնապես մեծ են այդ հաղթանակները սոցիալիստական արդյունաբերության և նրա միջուկը կազմող ծանր արդյունաբերության զարգացման բնագավառում։ Արդյունաբերական արտադրության*



*ընդհանուր ծավալի գծով հինգերորդ հնգամյա պլանը կատարվեց 1955 թվականի մայիսի 1-ին, այսինքն 4 տարի 4 ամսում։ 1955 թվականին արտադրության միջոցների արտադրությունը կգերազանցի 1950 թվականի մակարդակը 84 տոկոսով։ Ծանր արդյունաբերության առաջնահերթ զարգացման հիման վրա մեծ նվաճումներ են ձեռք բերված նաև թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման բնագավառում։ 1955 թվականին ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը 1950 թվականի մակարդակը հնգամյա պլանով նախատեսված 65 տոկոսի փոխարեն կգերազանցի 72 տոկոսով։ Լուրջ նվաճումներ են ձեռք բերված նաև սոցիալիստական գյուղատընտեսության շեշտակի վերելքն ապահովելու ուղղությամբ պարտիայի ու կառավարության մշակած միջոցառումների իրագործման ասպարեզում։*

*Այդ բոլորի շնորհիվ անշեղորեն բարձրանում է սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը, ծաղկում ու աճում է սովետական գիտությունը, մեր ժողովրդի կուլտուրան։*

*Սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը և ամբողջ աշխարհում*

երկարատև խաղաղություն պահպանելու դիրքերում հաստատորեն կանգնած են Սովետական Միության Զինված Ուժերը, այդ թվում նաև մեր պանծալի տանկային և մեքենայացված զորամասերը։

Սովետական Միության զրահատանկային և մեքենայացված զորքերը ծնունդ են առել Սովետական Բանակի հետ միասին և անցել են սխրագործություններով լի մարտական ուղի։ Այդ տարիների ընթացքում նրանք աճել ու դարձել են ցամաքային զորքերի առավել հզոր տեսակներից մեկը, Սովետական Բանակի հարվածային ուժը։

Ինչպես հայտնի է, ցարական Ռուսաստանը չուներ ո՛չ սեփական տանկային արդյունաբերություն, և ո՛չ էլ տանկեր։ Այնինչ հենց ռուս գիտնականները, գյուտարարները և ինժեներները աշխարհում առաջին անգամ ստեղծեցին տանկերի առաջին նախագծերը և նմուշները։

Տանկերի և զրահամեքենաների արտադրությունը մեր երկրում սկիզբ առավ 1919 թվականից, երբ Վ. Ի. Լենինի ցուցումով Նիժնի-Նովգորոդի Սորմովոյի գործարանում սկսվեց սովետական տանկերի արտադրությունը։ Դա հնարավորություն տվեց արդեն 1920 թվականին ստեղծելու Սովետական



Բանակի առաջին ավտոտանկային ջոկատներ, որոնք զինված էին հայրենական տանկերով ու զրահամեքենաներով։

Կոմունիստական պարտիան հետևողականորեն իրագործելով երկրի ինդուստրացման քաղաքականությունը, պատմականորեն կարճ ժամանակամիջոցում ապահովեց սոցիալիստական արդյունաբերության այնպիսի կարևոր ճյուղերի բուռն զարգացումը, որպիսիք են մետաղամշակումն ու մեքենաշինությունը։ Հենց այդ բազայի վրա էլ մեր երկրում արդյունաբերության մյուս ճյուղերի հետ միասին ստեղծվեց հայրենական տանկային արդյունաբերությունը, որը զինեց Սովետական Բանակի տանկային ու մեքենայացված զորամասերը աշխարհում ամենալավ մարտական մեքենաներով։

Հայրենական տանկաշինարարությունը հատկապես բուռն թափով զարգացավ 1930 թվականներից սկսած։ 1930 թվականից մինչև 1939 թվականը Սովետական Բանակի տանկային պարկը ավելացավ 43 անգամ։ 1939 և 1940 թվականներին սովետական կոնստրուկտորները ստեղծեցին, իսկ հայրենական տանկային արդյունաբերությունը յուրացրեց, աշխարհում լավագույն մարտական մեքենաների՝ «ԿՎ» ծանր տանկերի և

«Տ—34» միջին տանկերի արտադրությունը, որոնք ունեն բացառիկ մեծ հզորություն, զրահային հզոր պաշտպանություն և բարձր շարժունակություն։

Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ աճեցին սովետական տանկիստների, ինժեներների ու տեխնիկների բազմաթիվ հիանալի կադրեր, իրենց հայրենիքին մինչև վերջ նվիրված հայրենասերներ։ Տանկիստների բարձր որակավորում ունեցող կադրեր պատրաստելու համար ստեղծվեցին տանկային ու տանկատեխնիկական դպրոցներ և ուսումնարաններ, իսկ 1932 թվականից կազմակերպվեց զրահատանկային ու մեքենայացված զորքերի Ակադեմիա։

Սովետական Բանակը հայրենական տանկերով և որակյալ տանկիստներով համալրելու հետ միասին ստեղծվեցին զրահատանկային և մեքենայացված զորքերի կազմակերպման նոր ձևեր, մշակվեց նրանց մարտական գործադրման գիտական թեորիան։ Կազմակերպվեցին տանկային և մեքենայացված խոշոր միավորումներ, ինչպես ինքնուրույն գործողություններ կատարելու, այնպես էլ զորքերի մյուս տեսակների հետ



փոխգործողությունով մարտական խնդիրներ լուծելու նպատակով։

Սովետական Բանակի հզորությունը բարձրացնելու նկատմամբ պարտիայի ու կառավարության վարած իմաստուն քաղաքականության և անդուլ հոգատարության շնորհիվ Հայրենական պատերազմի սկզբին մեր զրահատանկային և մեքենայացված զորքերը ունեին մարտական առաջնակարգ մեքենաներ և տանկիստների լավ վարժեցված կադրեր։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Սովետական Միության զրահատանկային և մեքենայացված զորքերը բացառիկ կարևոր դեր խաղացին թշնամու դեմ ձեռք բերած պատմական հաղթանակում։

Պատերազմի սկզբում հիտլերյան բանակը, ինչպես հայտնի է, թվական գերակշռություն ուներ տանկերի և ավիացիայի ասպարեզում։ Չնայած դրան, սովետական տանկիստները Հայրենական Մեծ պատերազմի հենց առաջին շրջանում ցուցադրեցին իրենց վարպետությունն ու հերոսությունը։

Մոսկվայի նախամատույցներում տեղի ունեցած մարտերի ժամանակ արիության ու մարտական վարպետության օրինակ ցուցադրեցին 4-րդ տանկային բրիգադայի փա-

*ռապանծ տանկիստները գնդապետ, այժմ տանկային զորքերի գվարդիայի գեներալ—գնդապետ, Սովետական Միության կրկնակի Հերոս Մ. Ե. Կատուկովի ղեկավարությամբ։ Կարճ ժամանակամիջոցում այդ բրիգադան 1941 թվականի աշնանը ջախջախիչ հարվածներ հասցրեց հիտլերյան «տորատեգ» Գուդերիանի տանկային զորամասերին։ 1941 թվականի նոյեմբերին այդ բրիգադան վերանվանվեց առաջին գվարդիական տանկային բրիգադայի, որով սկիզբ առավ սովետական տանկային գվարդիան։*

*Կոմունիստական պարտիայի կոչով Հայրենական պատերազմի հենց սկզբից սովետական թիկունքի հերոսական տանկաշինարարները ամենակարճ ժամանակամիջոցում կարողացան մեծ չափով ավելացնել տանկերի թողարկումը։*

*Արդեն 1942 թվականի դեկտեմբերին տանկերի արտադրությունը նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ ավելացվեց 2 անգամ։ Իսկ 1943 թվականի սկզբին Սովետական Բանակը վերջնականապես հաստատեց իր քանակական գերակշռությունը տանկերի ասպարեզում՝ հիտլերյան բանակի նկատմամբ։ Պատերազմի վերջին 3 տարում մեր տանկային արդյու-*



*նաբերությունը ամեն տարի բանակին տալիս էր միջին հաշվով ավելի քան 30 հազար տանկ, ինքնագնաց հրետանային սարք և զրահամեքենա։ Դա գերազանցում էր Գերմանիայում տանկերի տարեկան միջին արտադրությունը 2 անգամ, ԱՄՆ-ի արտադրությունը՝ մեկ ու կես անգամ և Անգլիայի արտադրությունը՝ 6 անգամ։ Միայն Կիրովի անվան գործարանը, որը պատերազմի սկզբից Լենինգրադից փոխադրվեց Ուրալ, ռազմաճակատին տվեց 18 հազար տանկ և ինքնագնաց հրետանային սարք, 48,5 հազար տանկային մոտոռներ։ Այդ գործարանը արժանացել է կառավարական հինգ շքանշանների։*

*Տանկերի արտադրության ավելացման հետ միասին, սովետական տանկաշինարարները անդուլ կերպով կատարելագործում էին տանկերի կոնստրուկցիան, ստեղծում մարտական մեքենաների նոր տիպեր։ Այդ տարիներին «Տ—34» տանկի վրա դրվեց 85 միլիմետրանոց հզոր հրանոթ, ստեղծվեց «ԻՍ» ծանր տանկը, ավելացավ ծանր տանկերի հրետանային սպառազինության կարողությունը, զգալիորեն ուժեղացավ զրահային պաշտպանությունը։*

*Սովետական փառապանծ տանկիստները*

և տանկային ու մեքենայացված զորամասերը ակտիվ կերպով մասնակցեցին Հայրենական պատերազմի բոլոր կարևորագույն մարտական օպերացիաներին, վճռական դեր կատարեցին թշնամու նկատմամբ ձեռք բերված հաղթանակում և անսահման փառքով պսակեցին իրենց մարտական դրոշները։

Առաջին անգամ տանկային խոշոր զորամասերը սովետական հրամանատարությունը օգտագործեց Ստալինգրադի տակ մղած հերոսական մարտերում։ Սովետական տանկիստները և մեքենայացված զորքերը Ստալինգրադի տակ ճեղքելով թշնամու պաշտպանությունը հյուսիսում և հարավում, շրջանցեցին այն և շրջապատեցին հիտլերականների 330 հազարանոց բանակը։

Սովետական տանկիստները անսահման փառքով պսակեցին իրենց մարտական դրոշները 1943 թվականի ամռանը Կուրսկի տակ մղվող մարտերում։ Նրանք շրջապատեցին ու ոչնչացրին թշնամուն Կորսուն-Շևչենկովյան, Մինսկի, Յասսո-Կիշինևյան, օպերացիաներում և Բեռլինի համար մղվող մարտերում։ Սովետական տանկիստները կանգ չառնելով ոչ մի արգելքի առաջ, համարձակ կերպով ջրանցեցին Դնեպրը, Դնեստրը,



նան, Դնեստրը, Արևմտյան Բուգը, Վիսլան, Օդերը և բազմաթիվ այլ գետեր։

Հիտլերյան Գերմանիայի ջախջախումից հետո սովետական տանկիստները ակտիվ կերպով մասնակցեցին ճապոնական իմպերիալիստների ջախջախմանը։

Սովետական փառապանծ տանկիստների Հայրենիքին մատուցած ծառայությունները 315 անգամ նշված են Գերագույն Գլխավոր Հրամանատար Ի. Վ. Ստալինի հրամաններում, 250 հազար տանկիստներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ 1.142 տանկիստներ արժանացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչման, իսկ նրանցից 16-ը այդ կոչմանը արժանացել են կրկնակի անգամ։ Տանկային արդյունաբերության 9 հազարից ավելի աշխատողներ պարգևատրված են կառավարական շքանշաններով, իսկ նրանցից մի քանիսը արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։

Սովետական ժողովուրդը նշում է տանկիստների օրը ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների կողմից երկարատև խաղաղության համար մղվող պայքարում ձեռք բերած աչքի ընկնող նվաճումների պայմաններում։

Ինչպես նշված է ՍՍՌՄ Գերագույն Սովետի 3-րդ սեսիայի որոշման մեջ, Սովետական Միության և խաղաղասեր մյուս պետությունների բեղմնավոր գործունեության շնորհիվ վերջին ժամանակներս տեղի ունեցավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո պետությունների միջև ծագած միջազգային լարվածության որոշ մեղմացում։

Սակայն չպետք է մոռանալ, որ աշխարհում դեռևս կան ուժեր, որոնք ամեն կերպ աշխատում են ձախողել միջազգային լարվածության հետագա թուլացման ուղղությամբ իրագործվող միջոցառումները, շարունակել «սառը պատերազմի» քաղաքականությունը։ Այդ իսկ պատճառով սովետական ժողովուրդը համառ կերպով պայքարելով ժողովուրդների միջև փոխադարձ վստահության ու խաղաղության հաստատման համար, միաժամանակ ամրապնդում է մեր Հայրենիքի տնտեսական ու ռազմական հզորությունը։

Սովետական Բանակը այդ թվում և մեր փառապանծ տանկիստները զինված առաջնակարգ ռազմական տեխնիկայով, արթուն կերպով կանգնած են սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի պահպանման և Սովետական պետության պետական շահերի ապահովման դիրքերում։

---

# ԶՐՈՒՅՑ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ

Ագրոնոմ Ս. ՄԵԼՔԻՍԵԴԵԿՅԱՆ

Եգիպտացորենը շատ արժեքավոր կուլտուրա է։ Ուրիշ ոչ մի հատիկային կուլտուրա չի կարող համեմատվել նրա հետ՝ իր բարձր բերքատվությամբ։

Եգիպտացորենի կողրերից կաթնամոմային հասունության շրջանում պատրաստված սիլոսը հանդիսանում է խտացրած կեր, որն ունի նույն սննդարարությունը, ինչ որ հասունացած չոր հատիկը, իսկ կողրերից անջատ ցողուններից և եգիպտացորենից պատրաստված սիլոսը որակյալ հյութալի կեր է։ Եգիպտացորենի կանաչ մասսան իր մեջ համարյա թե երկու անգամ ավելի կերային միավոր է պարունակում, քան թե արևածաղկի և ուրիշ կերաբույսերի մասսան։

Այդ նկատի ունենալով մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ընթացիկ տարում

մեծ չափերով ընդարձակել են եգիպտացորենի ցանքատարածությունները։ Եթե տարիներ առաջ այդ կուլտուրան մշակվում էր մեր ռեսպուբլիկայի միայն չորս շրջանում, այն էլ աննշան տարածությամբ, ապա այժմ բոլոր շրջանների կոլտնտեսությունները եգիպտացորենի ցանքեր ունեն։

Գլխավոր խնդիրն այն է, որ մեր կոլտնտեսությունները ամեն տարի ապահովեն եգիպտացորենի բարձր բերքատվությունը։ Եգիպտացորենի բերքատվության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի ցանվող սերմերի որակը։ Ուժեղ, անբարենպաստ պայմաններին դիմացկուն բույսեր ստանալու համար, եգիպտացորենի ցանքերը պետք է ապահովել առողջ սերմերով։ Ցանքերի խնամքը եգիպտացորենի սերմադաշտերում պետք է անցկացնել ագրոտեխնիկական բարձր մակարդակի վրա, հատուկ ուշադրություն դարձնելով այնպիսի միջոցառումների վրա, ինչպիսին է բույսերի արհեստական փոշոտումը և բջատումը։

Եգիպտացորենի սերմնադաշտերում բերքահավաքը անհրաժեշտ է կատարել ձեռքով, սեղմ ժամկետում, հատիկի լրիվ հասունության ժամանակ, երբ եգիպտացորենի տերևները և ցողունը սկսում են դեղնել, իսկ հա-



տիկները դառնում են ամուր։ Եգիպտացորենը պետք է քաղել ցողուններով, կապել խուրձեր, մի քանի օր թողնել արևի տակ, որից հետո կողրերն անջատել ցողուններից և կատարել կողրերի ընտրություն սերմացուի համար։ Սերմացու եգիպտացորենի կողրերը պետք է լինեն խոշոր և լիքն ու առողջ հատիկներով։ Այդ կողրերն անհրաժեշտ է 3—5 օր չորացնել արևի տակ, հասցնելով հատիկի խոնավությունը 13—14 տոկոսի, որպեսզի հնարավոր լինի սերմացուն՝ մինչև ցանելը, պահպանել բարձր ծլունակությամբ և կենսունակությամբ։ Այնուհետև կողրերը տեղափոխել նախօրոք ախտահանված, լավ օդափոխվող պահեստ և պահել այնտեղ կույտերով՝ 1,5—2,0 մետր բարձրությամբ։ Պահպանման ընթացքում սերմացուի ներքևի շերտերի վիճակը ստուգելու համար կույտերում պետք է թողնել անցքեր։ Գիտահետազոտական հիմնարկների և առաջավորների փորձը ապացուցում է, որ կողրերի բերքահավաքից անմիջապես հետո սերմերի չորացումը բարձրացնում է բերքատվությունը 10—15 տոկոսով։ Սերմացու եգիպտացորենը պարտադիր կարգով պետք է պահել կողրերով։ Միայն ցանքից 5—7 օր առաջ հատիկներն անջատել կողրերից և նախապատրաստել ցանելու համար։

Այն դեպքում, երբ եգիպտացորենի բերքահավաքը կատարվում է խոնավ եղանակին և հնարավորություն չի լինում կողրերը չորացնել արևի տակ, անհրաժեշտ է կիրառել սերմացուի արհեստական օդա-ջերմային չորացում։ Դա հնարավոր է կատարել բոլոր տիպի չորանոցներում և հարմարեցված շենքերում։ Կողրերը պետք է փռել 25 սանտիմետր հաստության շերտով, հաճախակի խառնել փայտյա թիակով, որպեսզի հավասար չորանան։

Սերմացու եգիպտացորենի կողրերը, ինչպես ցույց է տալիս առաջավորների փորձը, հաջող չորացվում են նաև փնջեր կապած վիճակում, եթե այդ փնջերը կախում են շենքի տանիքներում։ Այս դեպքում կողրերը տերևներից պետք է մաքրել ոչ թե լրիվ, այլ թեթևակի և 18—20 կողր կապել միասին, կապոցների միջև թողնելով 10 սանտիմետր տարածություն, իսկ յուրաքանչյուր 3—4 շարքից հետո ազատ տարածություն, սերմացուի վիճակը դիտելու համար։

Սերմացուի պահպանման ընթացքում անհրաժեշտ է պահեստում սահմանել հսկողություն։ Եթե նկատվի կողրերի փչացում պետք է անմիջապես հեռացնել հիվանդություններով վարակված կողրերը։ Անհրաժեշտ է հե-



ռացնել նաև պահեստային վնասատուներով վնասված կողրերը։ Խոնավության բարձրացում նկատվելու դեպքում սերմացու կողրերը պետք է տեղափոխել չորանոց կամ տաքացվող շենք և չորացնել։

Տարեկան 2—3 անգամ պետք է ստուգել եգիպտացորենի սերմացուի ծլունակությունը և խոնավությունը, հարկ եղած դեպքում ժամանակին համապատասխան միջոցառումներ ձեռնարկելու համար։ Վերջին ստուգումը կատարել ցանքից 10—15 օր առաջ։ Եգիպտացորենի կողրերի նման պահպանման դեպքում սերմացուն ունենում է շատ բարձր ծլունակություն։

Եգիպտացորենի բարձր բերք ստանալու համար, բացի լավ սերմացու ընտրելուց, պետք է այժմվանից հոգ տանել նաև հողի ճիշտ ընտրության մասին։ Հարկավոր է հենց հիմա որոշել եգիպտացորենի ցանքի տեղը ցանքաշրջանառության մեջ շարահերկ կուլտուրաներին հատկացված դաշտում, նկատի ունենալով, որ եգիպտացորենի ամենալավ նախորդները աշնանացան հացահատիկներն են։ Լեռնային շրջաններում պետք է հատկացնել քամիներից պաշտպանված հողամասեր։ Եգիպտացորենի ցանքի համար առանձնացվող հողամասերը հիմնականում պետք է

լինեն ջրովի։ Անհրաժեշտ է խուսափել աղուտ հողերից։

Եգիպտացորենի ցանքի հողամասերն առանձնացնելիս անհրաժեշտ է նկատի ունենալ մշակության աշխատանքների մեքենայացումը։ Եգիպտացորենի ցանքի համար պետք է հիմնականում ընտրել տրակտորահարմար հողեր, որպեսզի հնարավոր լինի այնտեղ կատարել քառակուսի-բնային եղանակով ցանք, իսկ հետագայում՝ տրակտորային կուլտիվատորներով միջշարքային տարածությունների մշակություն։

Եգիպտացորենի ցանքերին հատկացված տարածություններում հացահատիկի բերքահավաքին զուգընթաց անհրաժեշտ է կատարել խոզանի երեսվար, իսկ աշնանը՝ 28—30 սմ. խորությամբ ցրտահերկ։ Ցրտահերկի տակ մտցնել հեկտարին 25—30 տոննա հասունացած գոմաղբ։

Անընդհատ բարելավելով եգիպտացորենի մշակությունը մեր կոլտնտեսությունները միշտ էլ կստանան առատ բերք։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ՀԱՄԱՉԱՓ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՏԵՂԱՄԱՍՈՒՄ

Բ. ԲԱԼԱՍԱՆՅԱՆ

Երևանի պահեստամասերի գործարանի ինժեներ-տնտեսագետ

Մեր գործարանում իր լավ աշխատանքով աչքի է ընկնում մեխանիկական № 1 ցեխի 4-րդ տեղամասը։ Տեղամասի կոլեկտիվը մտնելով պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, սիստեմատիկաբար ապահովում է արտադրության համաչափ աշխատանքը, կատարում և գերակատարում է արտադրական պլանները։ Այսպես, օրինակ, տեղամասը հուլիս ամսվա առաջին տասնօրյակի պլանը կատարեց 115 տոկոսով, երկրորդ տասնօրյակի պլանը՝ 115 տոկոսով և երրորդ տասնօրյակի պլանը՝ 116 տոկոսով։ Տեղամասում հունվար ամսվա համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 15,2 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում բարելավվել

է արտադրանքի որակը և 10 տոկոսով իջել արտադրանքի ինքնարժեքը։ Տեղամասում գրեթե լիովին վերացել է պարապուրդը։ 28 հոգի արդեն կատարել են հնգամյա պլանը։ Արտադրության առաջավորներից շատերն աշխատում են 1956, 1957 և նույնիսկ 1964 թվականների հաշվին։

Այժմ ուսումնասիրենք այն հարցը, թե տեղամասի կոլեկտիվն ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով ձեռք բերեց վերը նշված հաջողությունները և հատկապես ինչպե՞ս կարողացավ ապահովել համաչափ աշխատանքը տեղամասում։ Ամենից առաջ տեղամասի կոլեկտիվը կրճատեց հաստոցների վերանորոգման ժամանակաշրջանը (ցիկլը)։ Այդ տեղի է ունենում հետևյալ կերպ՝ վերանորոգման ցեխ ուղարկվող հաստոցների հետ միասին պատրաստի վիճակում ուղարկվում են նաև անհրաժեշտ մասերը, որը հնարավորություն է տալիս վերանորոգման ցեխին առանց ժամանակ կորցնելու հաստոցի համար մասեր պատրաստելու կամ այն ձեռք բերելու վրա, անմիջապես սկսել վերանորոգումը։ Մեզ մոտ դեպքեր են լինում, երբ առանձին հաստոցների վերանորոգումը արագացնում ենք 3—5 և շատ հաճախ 5—7 օրով։ Օրինակ, վերջերս տեղամասում կիսաավտոմատ



հաստոցներից մեկը վերանորոգման խիստ կարիք էր զգում։ Կիսաավտոմատի վերանորոգման համար պլանով նախատեսված էր հատկացնել 6 օր։ Տեղամասի պետ Ա. Սինակյանի նախաձեռնությամբ կիսաավտոմատ հաստոցի վերանորոգման համար պետքական բոլոր մասերը նախօրոք պատրաստվել էին հենց տեղամասում։ Դրա շնորհիվ կիսաավտոմատ հաստոցի վերանորոգումը կատարվեց տեղում, սեփական ուժերով և այն էլ մեկ օրում, նախատեսված 6 օրվա փոխարեն։ Կիսաավտոմատ հաստոցը ժամկետից 5 օր շուտ հանձնելով շահագործման, տեղամասը պլանից դուրս երկրին տվեց ավելի քան 2200 հատ պահեստամասեր։ Բազմաթիվ են նման օրինակները տեղամասում։ Այդ է պատճառը, որ այժմ հաստոցների վերանորոգման 50 տոկոսը կատարում է տեղամասն իր ուժերով։

Արտադրության համաչափ աշխատանքն ապահովելու գործին խոշոր չափով նպաստում է օժանդակ ժամանակամիջոցի կրճատումը։ Գործնականում այդ իրականացվում է հետևյալ կերպ. հերթափոխ բանվորն ավարտելով օրվա աշխատանքը, իրեն փոխարինողին դազգահի հետ միասին հանձնում է նաև որոշ քանակությամբ նյութեր և անհրա-

ժեշտ գործիքներ, իսկ վերջինս առանց ժամանակ կորցնելու շարունակում է աշխատանքը և ինքն էլ իր հերթին աշխատանքի ընթացքում հերթական փոխարինողի համար կուտակում է որոշ չափով նյութեր և այսպես շարունակաբար։ Աշխատանքի այս փորձն ունի այն առավելությունը, որ հերթափոխությունների ընթացքում հումքի, օժանդակ նյութերի պակասության պատճառով ոչ մի դազգահ կամ հաստոց պարապուրդ չի տալիս։

Օժանդակ բանվորների ռացիոնալ օգտագործումը նույնպես շատ է նպաստում արտադրության մեջ համաչափ աշխատանքն ապահովելուն։ Օրինակ, մեզ մոտ օժանդակ բանվորներն աշխատում են այնպես, որ արտադրող բանվորները միշտ էլ լի ու լի ապահովված են լինում կիսաֆաբրիկատներով, գլանվածքներով, մետաղով և այլն։ Եթե առաջ արտադրական բանվորը գլանվածք կամ կիսաֆաբրիկատ վերցնելու համար իր դազգահից պետք է հեռանար 20 մետր, ապա այժմ դրա հարկը չի զգացվում։ Օժանդակ բանվորների աշխատանքը կազմակերպված է այնպես, որ միշտ էլ հաստոցների ու դազգահների մոտ լինում է բավարար քանակությամբ գլանվածք և կիսաֆաբրիկատ։ Այն-



պես, որ արտադրող բանվորը ոչ մի րոպե չի կորցնում նյութեր ձեռք բերելու վրա և նրա հաստոցը միշտ աշխատում է համաչափ։

Տեղամասի առաջավորներն իրենց նորարարական առաջարկություններով ապահովում են արտադրության համաչափ աշխատանքը։ Օրինակ, բանվոր Ց. Խաչատրյանի նորարարական առաջարկի կիրառման շնորհիվ 15 տոկոսով բարձրացավ շաղափի օգտակար գործողության գործակիցը, իսկ տեղամասի պետ Ա. Սիսակյանի նորարարական առաջարկի շնորհիվ գործարանն այժմ տոննաներով պողպատ է տնտեսում։ Տեղամասի վարպետ Ս. Պալյանի առաջարկությամբ որոշ փոփոխություններ մտցվեցին խառատային հաստոցների կապիրների մեջ։ Այդ փոփոխման շնորհիվ մոտ կիսով չափ բարձրացավ հաստոցների կարողությունը։ Այժմ, այդ տեղամասի օրինակով են աշխատում №№ 1, 2 և 9 տեղամասերը։

Մտնելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, մեր տեղամասի կոլեկտիվը պատվով կկատարի ստանձնած պարտավորությունները, երկրին կտա ավելի շատ և ավելի բարձրորակ մեքենաների պահեստամասեր։

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Նոր Բայազետի շրջանի Նորադուզի Մոլոտովի անվան կոլտնտեսության վարչության նախագահ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ պատմածը

*Մեր կոլտնտեսության ընդհանուր ժողովը դեռ փետրվար ամսին քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները, պարտավորություններ ստանձնեց 1955 թվականին կաթի, մսի, բրդի և անասնապահական մյուս մթերքների պլանային առաջադրանքները գերակատարելու համար։ Կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի աշխատողները պարտավորվեցին յուրաքանչյուր 100 կովից ստանալ 87 հորթ, յուրաքանչյուր կովից 1.350 լիտր կաթ, 1.250 լիտրի փոխարեն և մինիմումի հասցնել կովերի ստերջությունը։ Առանձին կթվորներ պարտավորվեցին իրենց խնամած 14 կովից*



*ստանալ 14 հորթ և յուրաքանչյուր կովից՝ 1.500—1.600 լիտր կաթ։ Աշխատանքի ճիշտ կազմակերպման շնորհիվ ֆերմայի յուրաքանչյուր աշխատող գիտի իր կոնկրետ անելիքը և պլանային առաջադրանքը։ Բարձրացել է ֆերմայի աշխատողների անձնական պատասխանատվությունը։ Անասունների մսուրային շրջանում լավ հիմքերի վրա էր դրված կովերի խնամքը։ Կազմակերպված էր քսանչորս ժամյա հերթապահություն, մի բան, որն անցյալներում չէր կատարվում։ Այդ բոլորի շնորհիվ ֆերմայի 400 կովերից ստացվել է 372 հորթ, անցյալ տարվա 222 հորթի փոխարեն։ Նորածին հորթերը կերակրվում էին մորից անջատ-կաթնածծիչներով, որի շնորհիվ նրանք ունեցան նորմալ աճ և արոտի դուրս եկան գեր ու առողջ վիճակում։*

*Կովերի խնամքի ու կերակրման պայմանների բարելավման ուղղությամբ մեր անասնապահների կատարած հետևողական աշխատանքը հնարավորություն տվեց զգալի չափով ավելացնելու կովերի կաթնատվությունը։ Անցյալ տարվա համեմատությամբ, հունիսի մեկի դրությամբ, ֆուրաժային կովի կաթնատվությունն ավելացել է 296 լիտրով։ Ամառային արոտների հերթափոխ օգտագործման*

և գիշերային արոտ կազմակերպելու շնորհիվ միայն հունիս ամսվա ընթացքում յուրաքանչյուր ֆուրաժային կովից կթվել է 196 լիտր կաթ։ Նույնքան էլ կթվել է հուլիս ամսին, որով գերակատարվել է կաթնատվության պլանային առաջադրանքը։ Ավելի մեծ արդյունքների են հասել առանձին կթվորներ։ Անվանի կթվորուհի Երոն Կոստանյանը իրեն խնամած 14 կովից ստացել է 14 հորթ և առ 1-ը օգոստոսի յուրաքանչյուր կովից կթել է 1.501 լիտր կաթ։ Կոստանյանից ետ չեն մնում նաև Արևհատ Բաղոյանը և Դուխիկ Աթեյանը։ Ձեռք բերած հաջողությունների համար արդեն երրորդ ամիսն է, ինչ շրջանային Սովետի գործկոմի և պարտիայի շրջկոմի փոխանցիկ կարմիր դրոշը գտնվում է մեր կոլտնտեսությունում։ Մեր կոլտնտեսության վարչությունը և պարտկազմակերպությունը ժամանակին հոգ տարան անասունների գլխաքանակի պլանների կատարման մասին։ Օգոստոսի մեկի դրությամբ՝ կատարված են բոլոր տեսակի անասունների գլխաքանակի պլանները։ Կատարված է 1.400 գլուխ խոշոր եղջերավոր անասուն ունենալու պլանը, 410—ի փոխարեն կոլտնտեսությունն ունի 420 խոզ, պլանով նախատեսված 6.450



գլխի փոխարեն 7.256 մանր եղջերավոր անասուն։ Ոչխարների գարնան խուզի ժամանակ միջին բրդատվությունը կազմեց 1,8 կիլոգրամ, անցյալ տարվա 1,5 կիլոգրամի փոխարեն։ Կոլտնտեսությունը լրիվ չափով կատարել է պետությանը մթերման և գնումների կարգով կաթ, ձու և բուրդ հանձնելու իր բոլոր պարտավորությունները։

Անասունների գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման հարցը, միշտ էլ մնում է կոլտնտեսության վարչության և պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում։ Այս տարի մեր կոլտնտեսությունը դրել է կերի կայուն բազա ստեղծելու հիմքը։ Կատարվել է 104 հեկտար կորնգանի ենթացանք և ցանվել է 97 հեկտար մաքուր կորնգան։ Այսպիսով եկող տարի խոտաբույսերի հնձվող տարածությունն ավելանելու է 201 հեկտարով։ Կոլտնտեսությունը ցանել է 64 հեկտար եգիպտացորեն, որի ցանքերը այժմ գտնվում են լավ վիճակում։

Կոլտնտեսության վարչությունը չի հանգստանում ձեռք բերած հաջողություններով, գործնական պայքար է ծավալվում տնտեսության բոլոր ռեզերվները լրիվ օգտագործելու համար։ Արդեն կատարվել է 1.200

տոննա սիլոսի պատրաստման պլանը։ Ե-
գիպտացորենից և 20 հեկտար սիլոսի հա-
մար ցանված արևածաղկից մենք լրացուցիչ
կպատրաստենք ևս 1.000 տոննա սիլոս։ Այս-
պիսով յուրաքանչյուր կովի համար կկուտա-
կենք 5 տոննայից ավելի սիլոս։

Կոլտնտեսությունը ցանել է 33 հեկտար
ճակնդեղ, որից սպասվում է առնվազն 700
տոննա բերք, անցյալ տարվա 467 տոննայի
փոխարեն։ Հետևողական աշխատանք է
տարվում նաև խոտի կուտակման բնագավա-
ռում։ Պլանով սահմանված 360 հեկտար
բնական խոտհարքները լրիվ հնձված են։
Նախատեսվում է պլանից դուրս լավագույն
արոտների հաշվին հնձել ևս 40—50 հեկ-
տար։ Հնձված է նաև 396 հեկտար ցանովի
կորնգան, որի յուրաքանչյուր հեկտարից
ստացվել է 30—35, իսկ առանձին հեկտար-
ներից մինչև 50 ցենտներ խոտ։ Այս տարի
ավելի քան հաջող է կազմակերպված խոտի
չորացման, փոխադրման և այն գոմերին մո-
տիկ դիզելու աշխատանքները։ Մեր կոլտըն-
տեսությունը 1.400 տոննա խոտի կուտակ-
ման պլանը կատարել է հուլիսի 20-ին։ Այժմ
ձեռնարկված են միջոցառումներ 200 տոննա
լրացուցիչ խոտ կուտակելու համար։ Հացա-
հատիկային կուլտուրաների այս տարվա ա-



ռատ բերքից կկուտակվի մեծ քանակությամբ
ծղոտ։ Կերի կայուն բազայի ստեղծման գոր-
ծում, այն է դաշտերի պարարտացման,
փոցխման, հնձի, խոտի տեղափոխման և
այլ աշխատանքներում լրիվ կերպով օգտա-
գործվել են ՄՏ կայանի մեքենաները։

Կոլտնտեսության բոլոր ֆերմաների անա-
սունները ապահովված են տիպային շենքե-
րով և ձմեռումը անց են կացնելու լուսավոր
ու տաք գոմերում։ Այժմ լուրջ աշխատանք է
տարվում անասնապահական մի շարք աշ-
խատատար պրոցեսներ մեքենայացնելու ուղ-
ղությամբ։ Կոլտնտեսությունում լավ հիմքե-
րի վրա է դրված հաշվառման գործը։ Մեր
կոլտնտեսականները զինվելով գյուղատնտե-
սության և անասնաբուծության հետագա
զարգացման վերաբերյալ պարտիայի Կենտ-
րոնական Կոմիտեի պատմական որոշումնե-
րով, ժամկետից շուտ և պատվով կկատա-
րեն երկրին ավելի շատ անասնաբուծական
մթերքներ տալու առաջադրանքը։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

✪ *Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1955 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը ընդհանուր առմամբ վերցրած կատարել է 105 տոկոսով։ Այդ թվում միութենական ենթակայության ձեռնարկությունները արտադրանքի պլանը կատարել են 105 տոկոսով, իսկ ռեսպուբլիկական և տեղական ենթակայության ձեռնարկությունները՝ 106 տոկոսով։*

✪ *1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքի արտադրությունը ընդհանուր առմամբ աճել է 14 տոկոսով, այդ թվում միութենական արդյունաբերությանը՝ 17 տոկոսով, ռեսպուբլիկական արդյունաբերությանը՝ 12 տոկոսով։*

✪ *Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ աճել է 9 տոկոսով,*



*իսկ ինքնարժեքի իջեցումը նախնական տվյալներով կազմում է 3 տոկոս։*

✪ *1955 թվականի առաջին կիսամյակի պետական կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 108 տոկոսով։ Պետական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ կազմում է 106 տոկոս, այդ թվում բնակարանային շինարարությանը՝ 123 տոկոս, կուլտուր-կենցաղային հիմնարկների շինարարությանը՝ 111 տոկոս։*

✪ *Ռեսպուբլիկայի քաղաքային և գյուղական շինարարության մինիստրության կապալային կազմակերպությունները շինարարական-մոնտաժային աշխատանքների կիսամյա պլանը կատարել են 112 տոկոսով։*

✪ *Ռեսպուբլիկայի տերիտորիայում գտնվող երկաթուղային բաժանմունքը բեռնման 1955 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարել է 107 տոկոսով։ Բոլոր բեռների օրական միջին բեռնումը անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ աճել է 22 տոկոսով, իսկ վագոնի շրջապտույտի միջին տևողությունը արագացել է 9 տոկոսով։*

✪ *Այս տարվա առաջին կիսամյակում կարևորագույն բեռների բեռնումը 1954 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է հանքաքարինը՝ 17 տոկոսով, պարարտանյութերինը՝ 11 տոկոսով, շինարարական բեռներինը՝ 30 տոկոսով, արդյունաբերական հումքինը՝ 65 տոկոսով, պահածոնե-*

րինը՝ 3 անգամ, կահույքինը՝ 8 տոկոսով, գործվածքներինը՝ 16 տոկոսով, կիսաֆաբրիկատներինը՝ 11 տոկոսով։

✪ Ավտոմոբիլային տրանսպորտով բեռների փոխադրումները 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ աճել են 41 տոկոսով։ Ուղևորների փոխադրումների պլանը կատարվել է 113 տոկոսով։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ուղևորների փոխադրումն ավելացել է 90 տոկոսով։

✪ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծված են մետալուրգիական, քիմիական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, սննդի, տեքստիլ և արդյունաբերության այլ ճյուղեր։ Կառուցվել են տասնյակ գեղեցիկ հիդրոէլեկտրակայաններ, որոնք 320 անգամ շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվել է 1913 թվականին։

✪ Տեղական արդյունաբերության մինիստրության նորոգման արհեստանոցները 1955 թվականի առաջին կիսամյակի պլանները կատարել են կոշիկի նորոգման գծով 71 տոկոսով, հագուստեղենինը՝ 51 տոկոսով, կահույքինը՝ 81 տոկոսով, մետաղյա իրերինը՝ 82 տոկոսով, Հայարհխորհրդի արհեստանոցները կահույքի նորոգման պլանը կատարել են 93 տոկոսով, քիմիական մաքրման և ներկմանը՝ 75 տոկոսով, կոշիկի նորոգմանը՝ 90 տոկոսով և այլն։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները գարնանացան կուլտուրաների ընդհանուր



պլանը կատարել են 100,1 տոկոսով։ Հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը կատարվել է 115 տոկոսով։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները ցանել են 13 հազար 228 հեկտար եգիպտացորեն։

✪ ՄՏ կայաններում անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է հացահատիկային կոմբայնների, տրակտորային շարքացանների, բերքահավաքի մեքենաների քանակը։ Տրակտորների նորոգման պլանը կատարվել է 109 տոկոսով, կոմբայններինը՝ 103 տոկոսով, խոտհար մեքենաներինը՝ 120 տոկոսով, սիլոսահատ մեքենաներինը՝ 128 տոկոսով։

✪ Այս տարի հնձված են բնական խոտհարքներ 28 տոկոսով, ցանովի խոտհարքներ 81 տոկոսով ավելի, քան անցյալ տարի նույն ժամանակամիջոցում։ 66 տոկոսով ավելի սիլոս և 2 անգամ ավելի շատ խոտ է կուտակված։

✪ Կոլտնտեսություններում զգալի չափով ավելացել է կաթի արտադրությունը։ Ինն ամսվա ընթացքում՝ 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը, 40 տոկոսով ավելի շատ կաթ է կթվել, քան նախորդ տարվա նույն ժամանակաշրջանում։ Այդ նույն ժամանակամիջոցում մեկ կովի կաթնատվությունն ավելացել է 31 տոկոսով։

✪ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում մթերված և գնված է՝ միս 19 տոկոսով, կաթ՝ 31 տոկոսով, ձու՝ 24 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա նույն

*ժամանակամիջոցում։ Այդ ժամանակաշրջանում մթերված է նաև 31 տոկոսով ավելի բուրդ։*

✪ *Այս տարվա առաջին կիսամյակում կոլտնտեսությունները բանջարանոցային կուլտուրաների համար ջերմոցներ են պատրաստել 22 տոկոսով, իսկ ծխախոտի համար 18 տոկոսով ավելի, քան նախորդ տարին։*

✪ *Ընթացիկ տարվա առաջին կիսամյակի ապրանքաշրջանառության պլանը ռեսպուբլիկայում կատարվել է 102 տոկոսով, այդ թվում առևտրի ցանցը պլանը կատարել է 102 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունները՝ 110 տոկոսով։*

✪ *Սպառողական կոոպերացիան մանրածախ ապրանքաշրջանառության կիսամյա պլանը կատարել է 104 տոկոսով, այդ թվում մանրածախ առևտրի ցանցը պլանը կատարել է 103 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունները՝ 121 տոկոսով, գյուղատնտեսական մթերքների կոմիսիոն առևտրի պլանը՝ 156 տոկոսով, որը 1954 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է 3,6 անգամ։*

---



# ՊԱՆԾԱԼԻ ՏԱՍՆԱՄՅԱԿ

Ա. ՎԻԽՐԵՎ

*Սեպտեմբերի 2-ին հերոսական վյետնամական ժողովուրդը տոնում է Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հռչակման տասնամյակը։ Վյետնամական ժողովրդի հետ միասին այդ նշանավոր տարեթիվը նշում են նաև սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդները։*

*Ութսուն տարի Վյետնամում տերտնօրինություն էին անում օտարերկրյա գաղութարարները, հափշտակելով երկրի բնական հարստությունները, ճնշելով ու կողոպտելով նրա ազատասեր, տաղանդավոր ժողովրդին։ Ժողովուրդը անխնա պայքար էր մղում «քաղաքակիրթ» գիշատիչների, ֆեոդալական թագավորների ու մանդարինների դեմ։ Անգամ գաղութային տիրապետության ամենամռայլ տարիներին ժողովուրդը հաստատ հավատում էր, որ ազատության գործը կհաղթանակի, կգա ազատության օրը։*

*1945 թվականի սեպտեմբերի 2-ին, Ազգային ազատագրության կոմիտեի կողմից*

ղեկավարվող ընդհանուր ապստամբության հաղթանակի շնորհիվ ստեղծվեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկա՝ վյետնամական ժողովրդի առաջնորդ Հո Շի Մինի գլխավորությամբ։

Իշխանության գլուխ անցնելու հենց հետևյալ օրը կառավարությունը հրատարակեց օրենքներ, որոնք ապահովում են ժողովրդի հիմնական իրավունքները՝ մարդու իրավունքները, դեմոկրատական ազատությունները, սեփականության իրավունքը։ Երիտասարդ ռեսպուբլիկայի առաջ ծառացան քաղցի, տգիտության, օտարերկրյա միջամտության դեմ, գաղութային անցյալի ամբողջ ժառանգության դեմ պայքարելու խնդիրները։ Արմատական շրջադարձ սկսվեց իր բախտի տերը դարձած վյետնամական ժողովրդի կյանքում։

1946 թվականի հունվարին երկրում անցկացվեցին Ազգային ժողովի ընդհանուր ազատ ընտրություններ, իսկ մարտին Ազգային ժողովը հաստատեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության կազմը։ Միահամուռ կերպով ռեսպուբլիկայի պրեզիդենտ և կառավարության ղեկավար ընտրվեց Հո Շի Մինը։ Ժողովրդական կառավարությունը ձեռնամուխ ե-



ղավ պետական անկախության ամրապնդման և երկրում դեմոկրատական լայն բարեփոխություններ մտցնելու գործին։

Վյետնամական անկախ պետության ստեղծումը կատաղեցրեց իմպերիալիստներին։ Արդեն Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կազմումից անմիջապես հետո նրանք զինված ագրեսիա սկսեցին երիտասարդ ռեսպուբլիկայի դեմ։

Դաժան մարտերի ութը տարիները չկարողացան ընկճել Վյետնամի աշխատավորների հաղթանակի կամքը։ Իր ազատության համար պայքարող վյետնամական ժողովրդի կողմն էր աշխարհի բոլոր երկրների առաջավոր հասարակայնության համակրանքը։ Գաղութային կարգերի վերականգնողները գտնվում էին բարոյապես մեկուսացված վիճակում։

Հակառակ որոշ իմպերիալիստական շրջանների ոտնձգությունների, որոնք կոչ էին անում շարունակել ռազմական գործողությունները մինչև «վերջնական հաղթանակ», կոչ էին անում այսուհետև ևս «հնդկաչիններին օգտագործել հնդկաչինների դեմ», 1954 թվականի ամռանը ստորագրվեցին Ժնևի համաձայնագրերը, որոնք վերջ դրեցին այդ արյունահեղ պատերազմին և դրանով իսկ նր-

պաստեցին միջազգային հարաբերությունների լարվածության որոշ մեղմացմանը։

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կազմի մեջ մտնում են ամբողջ Հյուսիսային Վյետնամը և Կենտրոնական Վյետնամի մի մասը։ Այդ ամբողջ տերիտորիայում ապրում է մոտավորապես 13 միլիոն մարդ։ Ժնևյան համաձայնագրերին համապատասխան, 1956 թվականի հուլիսին Վյետնամում անցկացվելու են ընդհանուր ընտրություններ։ Համաձայնագրերը նախատեսում են այնպիսի գործուն երաշխիքների ապահովում, որ ընդհանուր ընտրություններն անցկացվեն առանց օտարերկրյա որևէ միջամտության։

Վյետնամական հողում հրանոթների որոտը դադարելուց հետո անցել է ընդամենը մեկ տարի, բայց Վյետնամի ժողովուրդը աշխատավորների իր փորձված պարտիայի ղեկավարությամբ արդեն հիանալի հաջողություններ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման գործում։

Երկրում լայնորեն անցկացվում է հողային ռեֆորմ, որը ոչնչացնում է ֆեոդալիզմի մնացորդները։ Իրագործվում է վյետնամական գյուղացու իղձը հողի մասին, կալվածատի-



րական ստրկությունից ազատագրվելու մասին։ Հողը անհատույց խլվում է կալվածատերերից և հանձնվում գյուղացիներին։ Իռիգացիոն սիստեմները դառնում են պետական սեփականություն։ Կալվածատերերից բռնագրավվում է ոչ միայն հողը, այլև անասունները, գյուղատնտեսական գործիքները, շինությունները, պարենի պաշարները։ Ներկայումս լրիվ չափով կամ մասնակիորեն հողային ռեֆորմ է անցկացված ռեսպուբլիկայի արդեն 26 նահանգներում, որտեղ կալվածատերերի հողը և գույքը բաժանված է 590 հազար գյուղացիական ընտանիքների միջև։

Արագ տեմպերով վերականգնվում է ռեսպուբլիկայի ամբողջ ժողովրդական տնտեսությունը։ Երկրում ստեղծվել են արդյունաբերության մի շարք նոր ճյուղեր, այդ թվում մետաղամշակման արդյունաբերություն։ Ընդլայնվում է վառելանյութի հանույթը Հարավ-Արևելյան Ասիայում խոշորագույն՝ Խոնգայայի քարածխի ավազանում։ Լիովին վերականգնված է Խանոյ-Նամ Կուան երկաթուղին։ Վերականգնվել են թշնամու կողմից հիմնովին ոչնչացված խոշոր ոռոգիչ կառուցվածքները, կառուցվել են 150-ից ավելի նոր ամբարտակներ ու շլյուզներ։ Ջտելով արագորեն վերացնել պատերազմի հետևանքները

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը խրախուսում է մասնավոր արդյունաբերության զարգացումը, օգնություն է ցույց տալիս այն արդյունաբերողներին և առևտրականներին, որոնց գործունեությունը համապատասխանում է երկրի շահերին։

Աղբյուրի պես հորդում է ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքը։ Երկրում իրագործվում է տարրական ձրի ուսուցում՝ մայրենի լեզվով։ Բոլոր նահանգներում գործում են հարյուրավոր դպրոցներ։ Բացվել են մի քանի բարձրագույն ուսումնական հաստատություններ, այդ թվում՝ ժողովրդական համալսարանը ռեսպուբլիկայի մայրաքաղաք Խանոյում։ Տասնյակ հազարավոր աշխատավորներ իրենց անգրագիտությունը վերացնում են անգրագիտության վերացման խմբակներում, որոնք գործում են ուսուցիչների և ուսանողների ղեկավարությամբ։

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում հրատարակվում են շատ գրքեր և թերթեր։ Միայն Խանոյում լույս են տեսնում երեք օրաթերթ և 12 շաբաթաթերթ։ Մեծ տիրաժով հրատարակվում են վյետնամական գրականության կլասիկների և ժամանակակից գրողների երկերը, որոնք կոչ են անում



պայքարել գաղութային և ֆեոդալական մնացուկների դեմ, պրոպագանդում են ժողովուրդների բարեկամության և խաղաղության, ազատության և ազգային անկախության վեհ գաղափարները, աշխատավորների երջանկության համար պայքարի գաղափարները։ Սովետական գիրքը վաղուց արդեն դարձել է վյետնամական բանվորի, գյուղացու, ինտելիգենտի հավատարիմ բարեկամը։

Վյետնամական ժողովրդի նկատմամբ սովետական ժողովրդի կողմից տածվող եղբայրական բարեկամության և խոր հարգանքի զգացմունքը վառ կերպով արտահայտվեց այն օգնության մեջ, որ Սովետական կառավարությունը որոշեց ցույց տալ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկային։ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի բնակչության կենսամակարդակը բարձրացնելու և էկոնոմիկան վերականգնելու համար, այդ թվում արդյունաբերական և կոմունալ 25 ձեռնարկությունների վերականգնման և կառուցման համար՝ Սովետական կառավարությունը անվերադարձ առանձնացրեց 400 միլիոն ռուբլի։ Օգնություն է ցույց տրվելու նաև ՍՍՌՄ ուսումնական հաստատություններում վյետնամական մասնագետներ

պատրաստելու, երկրաբանական-հետախուզական աշխատանքներ կատարելու, վարակիչ հիվանդությունների դեմ բուժ-պրոֆիլակտիկ միջոցառումներ անցկացնելու գործում։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարությունը նույնպես Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկային ցույց տվեց անվերադարձ օգնություն 800 միլիոն յուանայի չափով։

Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հռչակման տասնամյակի պանծալի օրը սովետական ժողովուրդը եղբայրական սրտագին ողջույն է հղում հերոսական և աշխատասեր վյետնամական ժողովրդին և նրան ցանկանում է նորանոր հաջողություններ իր հիանալի երկրի վերականգնման ու զարգացման գործում, Ասիայում և ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման համար մղվող նվիրական պայքարում։

---

## СОДЕРЖАНИЕ





# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. Լենին— «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ»: Գինը 1 ռ. 85 կ., 168 էջ, տիրաժ 5000:

«Սովետական Միության Կոմունիստական պարտիան համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում»: 2-րդ մաս: 1924—1930 թ. թ.: Թարգմանված է յոթերորդ հրատարակությունից: Գինը 13 ռ. 45 կ., 856 էջ, տիրաժ 10000:

Հ. Շիրազ— «Սիամանթո և Խաջեզարե»: Պոեմ: Գինը 5 ռ. 90 կ., 36 էջ, տիրաժ 10.000:

Ծ. Աղայան— «Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905—1907 թ. թ.: Գինը 1 ռ., տիրաժ 6000:

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 16 1955 г.

ՎՖ 12253 Պատվեր 702 Տիրաժ 8760

ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների
և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչու-
թյան № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8,
1955 թ., գինը 50 կոպ.: